ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք






# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ


ՆՈՅԵՄԲԵՐ 11 1985



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**11**

ՆՈՅԵՄԲԵՐ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.

ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



## С О Д Е Р Ж А Н И Е



ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1985 թվականի նոյեմբերի 15-ին կայացավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը:

Պլենումը քննարկեց հետևյալ հարցերը.

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի նախագծի մասին:

ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների մասին:

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծի մասին:

Այդ հարցերի վերաբերյալ զեկուցումով պլենումում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը: Զեկուցման տեքստը հրապարակվում է մամուլում:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ պլենումում ելույթ ունեցան. Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ա. Ա. Տիտարենկոն, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի երկրորդ քարտուղար ընկ. Ռ. Ֆ. Դեմենտևան, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Յու. Ֆ. Սոլովյովը, «Պրավդա» թերթի գլխավոր խմբագիր ընկ. Վ. Գ. Աֆանասևը, ՍՄԿԿ Օմսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Ի. Մանյակինը, սարքաշինության, ավտոմատացման միջոցների և կառավարման համակարգերի մինիստր ընկ. Մ. Ս. Շկաբարդնյան, Ուրալի Ս. Օրջոնիկիձեի անվան ծանր մեքենաշինության գործարանի խառատ ընկ. Ա. Մ. Կորոլյովը, Ղազախստանի կոմկուսի Կուստանայի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Պ. Դեմիդենկոն, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հավանություն տվեց իր քննարկմանը ներկայացված փաստաթղթերին և որոշեց դրանք հրապարակել՝ ՍՄԿԿ XXVII համագումարին նախորդող կուսակցական ժողովներում, կոնֆերանսներում և միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում, իսկ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագիծը՝ նաև աշխատավորական կոլեկտիվների, ուսումնական հաստատությունների, զորամասերի և հասարակական կազմակերպությունների ժողովներում քննարկելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում քննարկվեցին կազմակերպական հարցեր:

Պլենումը ընկ. Ն. Վ. Տալիզինին ընտրեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու:

Պլենումը ընկ. Ն. Ի. Ռիժկովին ազատեց ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարի պարտականություններից՝ նրան ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ նշանակելու կապակցությամբ: Որոշում ընդունվեց ընկ. Ն. Ա. Տիխոնովին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամի պարտականություններից ազատելու մասին՝ առողջական վիճակի պատճառով կենսաթոշակի անցնելու կապակցությամբ:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

---

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումի որոշումը

# ՍՄԿԿ ԾՐԱԳՐԻ ՆՈՐ ԽՄԲԱԳՐՈՒՅԹԻ, ՍՄԿԿ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ, ՍՍՀՄ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ 1986-1990 ԹՎԱԿԱՆՆԵՐԻ ԵՎ ՄԻՆՉԵՎ 2000 ԹՎԱԿԱՆՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆԻ ՀԻՄՆԱԿԱՆ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽԱԳԾԵՐԻ ՄԱՍԻՆ

Քննարկելով ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծերը, այդ հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը որոշում է.

1. Հավանություն տալ Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրի նոր խմբագրության՝ ՍՄԿԿ Կենտկոմի հանձնաժողովի նախապատրաստած նախագծին:

2. Հավանություն տալ ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի ներկայացրած նախագծին:

3. Հավանություն տալ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծին:

4. Սույն փաստաթղթերը մամուլում հրապարակել կուսակցության մեջ, աշխատավորական կոլեկտիվներում, երկրի բնակչության ամենալայն խավերում քննարկելու համար:

5. Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, օկրուգկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին՝ կազմակերպել հիշյալ փաստաթղթերի քննարկումը ՍՄԿԿ XXVII համագումարին նախորդող կուսակցական ժողովներում, կոնֆերանսներում և միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում, իսկ ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագիծը՝ նաև աշխատավորական կոլեկտիվների, ուսումնական հաստատությունների, զորամասերի և հասարակական կազմակերպությունների ժողովներում:

6. ՍՄԿԿ Կենտկոմն ընդգծում է, որ կուսակցության ծրագրի նոր խմբագրության, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների, հիմնական ուղղությունների նախագծերի քննարկման, պրոպագանդման և պարզաբանման աշխատանքը պետք է կրի գործարար, կոնստրուկտիվ բնույթ, սերտորեն շաղկապվի աշխատավորական կոլեկտիվների առջև կանգնած ընթացիկ և հե-





ռանկարային կոնկրետ խնդիրների լուծման հետ: Անհրաժեշտ է ուշադրության կենտրոնում դնել արտադրության ինտենսիվացման, գիտատեխնիկական առաջադիմության արագացման, խնայողության ռեժիմի ուժեղացման, բոլոր տեղամասերում կազմակերպվածության ու կարգապահության բարձրացման, աշխատանքի ոճի կատարելագործման հարցերը: Կարևոր է ապահովել կոմունիստների և անկուսակցականների ակտիվ, շահագրգիռ մասնակցությունը նախահամագումարյան փաստաթղթերի քննարկմանը: Հասնել այն բանին, որ յուրաքանչյուր սովետական մարդ լավ իմանա կուսակցության ծրագրային նպատակներն ու խնդիրները, մեր ներքին ու արտաքին քաղաքականության իմաստը, խորապես ըմբռնի հասարակության սոցիալ-տնտեսական զարգացումն էականորեն արագացնելու՝ որպես ժողովրդի բարեկեցության բարձրացման, սոցիալիստական հայրենիքի հզորության ամրապնդման հիմքի, որպես խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար նրա հաջող պայքարի օբյեկտիվ անհրաժեշտությունը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության, ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների նախագծերի համաժողովրդական քննարկումը կընթանա կազմակերպական ու գաղափարաքաղաքական բարձր մակարդակով, կնպաստի համագումարի համար կուսակցության և ամբողջ ժողովրդի փորձով հարստացված, գիտականորեն հիմնավորված առաջարկությունների մշակմանը, կծառայի 1985 թվականի պետական պլանների ու սոցիալիստական պարտավորությունների հաջող կատարման, տասներկուերորդ հնգամյակում եռանդուն մեկնարկի և ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել դիմավորելու համար մղվող պայքարում աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության և ակտիվության հետագա զարգացմանը:

---

# ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը

Ընկերնե՛ր։

Մենք պետք է քննարկենք ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի, ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների, ինչպես նաև ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների նախագծերը։

Սրանք հսկայական քաղաքական նշանակություն ունեցող փաստաթղթեր են։ Դրանցում խոսքը վերաբերում է մեր ծրագրային նպատակներին, կուսակցության գլխավոր գծի, նրա տնտեսական ստրատեգիայի հանգուցային հարցերին, մասսաների մեջ կատարվող աշխատանքի ձևերին ու մեթոդներին պատմության ժամանակակից, բացառիկորեն բարդ ու պատասխանատու հատվածում, որը ինչպես ներքին, այնպես էլ միջազգային առումով մեծապես ունի բեկումնային բնույթ։

Ինչպես գիտեք, ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումը, իսկ ապա՝ գիտատեխնիկական առաջընթացի հարցերին նվիրված խորհրդակցությունը տվեցին ստեղծված իրադրության հանգամանալի վերլուծությունը, առաջադրեցին և հիմնավորեցին երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու և այդ հիման վրա սովետական հասարակության որակապես նոր վիճակի հասնելու ծավալուն կոնցեպցիան։ Դրանում է գործի արմատը, դրանում է մեր պրոբլեմների ողջ էությունը։

Արագացման կոնցեպցիայով է մեր կուսակցությունն այսօր հանդես գալիս ժողովրդի առջև, դրանով է նա գնում դեպի հերթական XXVII համագումարը։ Դա ՍՄԿԿ Կենտկոմի սույն պլենումի քննարկմանը դրված բոլոր երեք փաստաթղթերի առանցքն է։ Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը կոչված է ապահովելու խաղաղության պայմաններում սովետական մարդկանց նյութական ու հոգևոր հարուստ, սոցիալապես դինամիկ կյանք, է՛լ ավելի լրիվ և ցայտուն բացահայտելու սոցիալիստական կարգերի կողմից մարմնավորվող պատմականորեն նոր տիպի քաղաքակրթության հնարավորություններն ու առավելությունները։

Նախ և առաջ ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի մասին, որը նախապատրաստվել է XXVI համագումարի հանձնարարության համաձայն։ Նախապատրաստման լուրջ, հանգամանալի աշխատանքի պրոցեսում ծառանում էին ինչպես տեսական, այնպես էլ քաղաքական բնույթի ոչ հասարակ հարցեր, որոնք կապված էին անցած ուղու արդյունքներն իմաստավորելու, երկրի հետագա զարգացման հեռանկարները սահմանելու հետ։

Վերջին քառորդ դարի ընթացքում, և մենք դա տեսնում ենք, մեր երկրում օբյեկտիվ բնույթի տնտեսական ու սոցիալական լուրջ տեղաշարժեր են կատարվել։ Դրանք պահանջում էին խոր վերլուծություն, ընթացիկ ու երկարաժամկետ նպատակների ճշգրտում, դրանց հասնելու ուղիների սահմանում, հավասարապես նաև կուսակցության կազմակերպչական, սոցիալ-տնտեսական և գաղափարախոսական գործունեության նկատմամբ նոր մոտեցումների սահմանում։ Ծրագրի ճշգրտված դրույթներ էր պահանջում նաև միջազգային իրադրությունը։ Անհրաժեշտ էր մշակել ուժերի տեղաբաշխման մեջ այն փոփոխությունների նոր ըմբռնում, որոնք տեղի են ունենում ինչպես դասակարգային, սոցիալական առումով, այնպես էլ խաղաղության սկզբունքը որպես



միջպետական, բոլոր միջազգային հարաբերությունների համընդհանուր նորմա հաստատելու համար մղվող պայքարի շուրջը։

Այլ խոսքով, պահանջվում էր ոչ միայն հանրագումարի բերել արվածը, կատարվածը, այլև մշակել հանուն մարդու և աշխարհի խաղաղության գործողությունների պարզ ու հիմնավորված ծրագիր։

Այս առնչությամբ ինչի՞ վրա կցանկանայի հրավիրել ձեր ուշադրությունը։

Նախ և առաջ ՍՄԿԿ տեսական ու քաղաքական գլխավոր հիմնադրույթների հաջորդայնության վրա։ Մենք սրան սկզբունքային նշանակություն ենք տալիս։ Կյանքը հաստատել է կուսակցության երրորդ ծրագրի հիմնական բովանդակության ճշտությունը։ Կատարելով այդ ծրագիրը, մեր երկիրը մեծապես առաջ է ընթացել կոմունիստական շինարարության բոլոր ուղղություններում։ Երրորդ ծրագրի տեսական ու քաղաքական հիմնական դրույթները պահպանվում են նրա նաև նոր խմբագրույթի մեջ։

Տեսության զարգացման և կուսակցության ծրագրային հիմնադրույթների մեջ հաջորդայնության հարցը կուսակցության տեսական սկզբունքայնության և հետևողականության հարց է, մարքսիզմ-լենինիզմին նրա հավատարմության հարց։ ՍՄԿԿ-ն համաշխարհային կոմունիստական շարժման մեջ այսքան բարձր հեղինակություն և սովետական ժողովրդի այսպիսի վստահություն չէր ունենա, եթե նա առանց պատշաճ պատասխանատվության վերաբերվեր սեփական տեսական հետևություններին և քաղաքական գնահատումներին։

Սրա հետ մեկտեղ տեսության մեջ հետևողականությունը և հաջորդայնությունը անպայման ենթադրում են տեսության ստեղծագործական զարգացում, դրա հարստացում սկզբունքային դրույթներով՝ պատմական փորձին համապատասխան։ Սա միանգամայն բնական է։ Հիմա մենք ավելի լավ, ավելի ստույգ ենք պատկերացնում սոցիալիզմի կատարելագործման ուղիները, մեր ծրագրային նպատակին՝ կոմունիզմին հասնելու ուղիները։ Անտարակույս, այս ամենը պետք է արտացոլվեր և արտացոլվել է կուսակցության տեսական ու քաղաքական գլխավոր փաստաթղթի մեջ։

Հարստացնելով, զարգացնելով ծրագրի բովանդակությունը, մենք միևնույն ժամանակ քննադատաբար վերաիմաստավորել ենք նրա այն ձևակերպումները, որոնք չեն դիմացել ժամանակի քննությանը։ Սա բխում է մեր կուսակցության ավանդույթներից։ Ինչպես նշել է Լենինը, ծրագրի «առանձին կետերի և ձևակերպումների քննադատությունը միանգամայն օրինական ու անհրաժեշտ բան է յուրաքանչյուր կենդանի կուսակցության մեջ»։

Այդ ամբողջ աշխատանքում մեր ելակետը եղել են կուսակցության ծրագրի կառուցման լենինյան սկզբունքները։ Ծրագիրը պետք է լինի իրական պրոցեսի ճշգրիտ ձևակերպումը, հստակորեն շարադրի հիմնական հայեցակետերը, քաղաքական խնդիրները, զերծ լինի ինչպես ավելորդ մանրամասնումից, հիմնազուրկ երևակայությունից, այնպես էլ գրքային գերիմաստությունից, սահմանումախաղից։ Ծրագիրը պարզ ու ճշգրիտ հայտարարություն է այն մասին, ինչին կուսակցությունը ձգտում է և հանուն ինչի պայքարում է։

Կենտկոմի քաղբյուրոն գտնում է, որ ներկայացված փաստաթուղթն ամբողջությամբ վերցված համապատասխանում է այդ պահանջներին։ Այն հիմնվում է մարքս-լենինյան տեսության վրա, երկրի ներսում և համաշխարհային ասպարեզում տեղի ունեցող պրոցեսների իրատեսական վերլուծության վրա, տալիս է կուսակցության, սովետական պետության, ամբողջ ժողովրդի աշխատանքի ստրատեգիական ուղղությունների հստակ ու ծավալուն բնութագրումը՝ ելնելով երկրի զարգացման կոմունիստական հեռանկարից։

Կուսակցության երրորդ ծրագիրը իր սույն խմբագրույթով սոցիալիզմի պլանաչափ և համակողմանի կատարելագործման ծրագիր է, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հիման վրա դեպի կոմունիզմ սովետական հասարակության հետագա առաջընթացի ծրագիր։ Սա խաղաղության և սոցիալական առաջադիմության համար մղվող պայքարի ծրագիր է։

Մենք աներեր ընթանում ենք դեպի կոմունիզմ, ելնելով այն բանից, որ միասնական կոմունիստական ֆորմացիայի երկու փուլերի միջև խիստ սահ-

րի հսկայական բազմազանության պայմաններում կենսականորեն կարևոր պրոբլեմների լուծման նկատմամբ նոր մոտեցումների որոնումը պահանջում է իրատեսորեն հաշվի առնել նրանց երբեմն չզուգադիպող, իսկ երբեմն էլ իրար բախվող շահերը քաղաքական ճիշտ կուրս մշակելու համար: Ինչպես գտնում է Կենտկոմի քաղբյուրոն, ծրագրի նոր խմբագրույթը դրա համար լավ կողմնորոշիչներ է տալիս:

Ծրագիրը աշխարհում խաղաղության հաստատման, ժողովուրդների սոցիալական առաջադիմության և ազգային ազատագրության մեր կոնցեպցիայի ամբողջական արտահայտությունն է, դրանում ձևակերպված են քաղաքականության ֆունդամենտալ հիմքերը, ևս կասեի՝ դրա գլխավոր հենարանները, որոնք անսասան են մնում: Դրա հետ մեկտեղ ծրագիրը ցուցադրում է միջազգային գործերի նկատմամբ մեր կուսակցության մոտեցման լայն ընդգրկումը, իրադրության փոփոխությունները ժամանակին հաշվի առնելու, անկանխակալորեն իրականությանը նայելու, տեղի ունեցող իրադարձությունները օբյեկտիվորեն գնահատելու, մոմենտի պահանջներին ճկունորեն արձագանքելու նրա ունակությունը:

Մենք բացեիբաց ենք խոսում մեր միջազգային քաղաքականության նպատակների մասին, դրանց հասնելու ուղիների մասին: Այս իմաստով մեր քաղաքականությունը միանգամայն կանխագուշակելի է, նրա մեջ չկան հանելուկներ և անորոշություններ: Դա երկու հակադիր սիստեմների խաղաղ գոյակցության լենինյան գաղափարի վրա հիմնված քաղաքականություն է: Մենք ելնում ենք այն բանից, որ միայն կայուն և հուսալի քաղաքականությունն է արժանի այն պետություններին ու կուսակցություններին, որոնք գիտակցում են աշխարհի բախտի համար իրենց պատասխանատվությունը հակասություններով հագեցած մեր դարում:

Առաջադեմ ուժերը ծրագրի մեջ կտեսնեն իրենց պայքարի հետ մեր անշեղ համերաշխության, մեր կողմից իրենց հայացքներն ու դիրքորոշումները հարգելու, իրենց միասնության՝ բազմազանության այն դիալեկտիկական միասնության ամրապնդմանը նպաստելու մեր ձգտման արտահայտությունը, որն ընդգրկում է ռեալ սոցիալիստական աշխարհի, բանվորական ու կոմունիստական, ազգային ազատագրական շարժման, հետադիմության ու ագրեսիայի դեմ, խաղաղության ու առաջադիմության համար պայքարող բոլոր շարժումների ամբողջ կենդանի հյուսվածքը:

Այժմ Հիմնական ուղղությունների նախագծի մասին: Այն կոչված է ասես նյութականացնելու ՍՄԿԿ-ի ծրագրի դրույթները, դրանք թարգմանելու կոնկրետ պլանային առաջադրանքների լեզվով՝ ծրագրի իրականացման այնպիսի պատասխանատու փուլի համեմատ, ինչպիսին է տասներկուերորդ հնգամյակը և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանը:

Մեծ աշխատանք է կատարված, բայց այն հեշտ ու հանգիստ չէր ընթանում: Եվ ոչ միայն այն պատճառով, որ մեր էկոնոմիկայի նման հսկայամասշտաբ էկոնոմիկայի զարգացման գիտականորեն հիմնավորված հեռանկարի մշակումը այնքան էլ դյուրին գործ չէ: Մանավանդ, երբ էկոնոմիկայի առջև ծառանում են որակապես նոր խնդիրներ: Հարկավոր էր հաշվի առնել ժողովրդական տնտեսության տեմպերի, համամասնությունների և արդյունավետության վրա ազդող, ընդ որում՝ տարբեր կերպ ազդող օբյեկտիվ գործոնների ամբողջությունը:

Մենք բախվեցինք նաև այլ կարգի պրոբլեմների, որոնց պատճառն այն է, որ դեռևս մեր ոչ բոլոր կադրերն են ձերբազատվել իներցիայից, հին սխեմաներից, տնտեսության էքստենսիվ վարման հակումից: Ոչ բոլորը հոգեբանորեն պատրաստ եղան աշխատելու նոր պայմաններում, այն բանին, որ տասներկուերորդ հնգամյակում արմատական շրջադարձ կատարեն դեպի ինտենսիվացումն ու որակը: Հարկ եղավ այս տրամադրությունները հաղթահարել և հաղթահարել, ինչպես ասում են, ոտքի վրա, երբ Հիմնական ուղղությունների վրա կատարվող աշխատանքը արդեն լրիվ ընթացքի մեջ էր: Այստեղ մեծ դեր խաղացին ռեզերվների որոնման և հնգամյակի լարված առաջա-



դրանքների մշակման համար աշխատավորական կոլեկտիվների ներգրավումը, կուսակցական կազմակերպությունների ակտիվ դիրքորոշումը՝ հանրապետական, երկրամասային ու մարզային կազմակերպություններից մինչև սկզբնական կազմակերպությունները:

Այդ ամենի շնորհիվ շատ բան հաջողվեց շտկել, և այսօր քննարկվող նախագիծը, ինչպես գտնում է Կենտկոմի քաղբյուրոն, հիմնականում համապատասխանում է տնտեսական աճի արագացման, այնպիսի ստրատեգիական խնդիրների միաժամանակյա լուծման վերաբերյալ կուսակցության ծրագրային պահանջներին, ինչպիսիք են ժողովրդի բարեկեցության բարձրացումը, մեր հայրենիքի տնտեսական պոտենցիալի ամրապնդումը և պաշտպանական հզորության պահպանումը պատշաճ մակարդակի վրա:

Հատկանշական է այն փաստը, որ հնգամյակում ազգային եկամտի և նյութական արտադրության բոլոր ճյուղերի արտադրանքի հավելաճերը առաջին անգամ ամբողջովին ստացվելու են աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին: Հնգամյակում նախատեսվող նյութատարության զգալի պակասեցումը թույլ կտա տնտեսումը դարձնել լրացուցիչ նյութական ռեսուրսների հարցում ժողովրդական տնտեսության պահանջմունքների բավարարման վճռական աղբյուր:

Անցյալի համեմատ ավելի եռանդագին կիրականացվեն էկոնոմիկայի ստրուկտուրային վերակառուցումը, ժողովրդական տնտեսության զարգացման առաջնային ուղղություններում կապիտալ ներդրումների համակենտրոնացումը: Շեշտը առաջին հերթին դրվում է գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ու վերակառուցման վրա: Արագ զարգացում կստանան մեքենաշինությունը, քիմիական, էլեկտրոնային և էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը: Կընդլայնվեն մեքենաների ու սարքավորումների նորագույն սերունդների թողարկումը, առաջադիմական նյութերի և տեխնոլոգիաների կիրառումը:

Մի խոսքով, տասներկուերորդ հնգամյակում նկատելի տեղաշարժ կկատարվի դեպի արդյունավետություն: Բայց այդ ուղղությամբ արմատական տեղաշարժեր կատարելու համար ջանքերը չի կարելի թուլացնել: Ընդհակառակն, հարկավոր է դրանք մեծացնել: Եվ այստեղ առաջնակարգ նշանակություն են ստանում պլանավորման ու կառավարման, տնտեսավարման մեթոդների կատարելագործումը, գործի կազմակերպման բարելավումը, բոլոր տեղամասերում կարգապահության և պատասխանատվության ամրապնդումը, մասսաների ստեղծագործական նախաձեռնության ըստ ամենայնի զարգացումը:

Մինչև երրորդ հազարամյակը նախատեսված բնագծերի նվաճումը կախված կլինի այն բանից, թե որքան արագորեն կավարտվի շրջադարձը դեպի արդյունավետություն, թե որքան արագորեն կիրականացվի ժողովրդական տնտեսության նոր տեխնիկական վերակառուցումը: Նախատեսվում է առաջիկա տասնհինգ տարում ստեղծել այնպիսի տնտեսական պոտենցիալ, որն իր մասշտաբներով հավասար լինի սովետական իշխանության բոլոր նախորդ տարիներին կուտակված պոտենցիալին, համարյա երկու անգամ ավելացնել ազգային եկամուտը և արդյունաբերական արտադրության ծավալը: 2,3—2,5 անգամ կբարձրանա աշխատանքի արտադրողականությունը:

Դա թույլ կտա կրկնապատկել մարդկանց պահանջմունքների բավարարմանը հատկացվող ռեսուրսների ծավալը: Կարծում եմ, ներկայացված փաստաթուղթը մեզ բոլոր հիմքերը տալիս է ասելու, որ դրա սոցիալական ծրագրի իրացումը հնարավորություն կտա առաջիկա երեք հնգամյակում սովետական մարդկանց կենսամակարդակը բարձրացնել որակապես նոր աստիճանի:

Ինչպես ներքին, այնպես էլ միջազգային քաղաքականության մեջ լուծվող խնդիրների մասշտաբայնությունը, խորությունն ու բարդությունը նոր մեծ պահանջներ են ներկայացնում կուսակցական ղեկավարման մակարդակին, թելադրում են կուսակցական աշխատանքի բոլոր կողմերի նկատմամբ նոր մոտեցումների անհրաժեշտություն: Բնական է, որ այդ ամենը պետք է իր

արտահայտությունը գտնի կուսակցության հիմնական օրենքի, կյանքի մեր կուսակցական կոդեքսի՝ ՍՄԿԿ կանոնադրության մեջ։

Ո՞րն է կանոնադրության մեջ առաջարկվող փոփոխությունների սկզբունքային իմաստը։

Եթե համառոտակի ասենք, ապա դա, մի կողմից, ներկուսակցական դեմոկրատիայի հետագա ընդլայնումն է, կոմունիստների, կուսակցության բոլոր կազմակերպությունների և առաջին հերթին սկզբնական կազմակերպությունների նախաձեռնության ու ակտիվության զարգացումը, մյուս կողմից՝ ընդհանուր գործերի լուծման համար նրանց պատասխանատվության բարձրացումը։ Որքան բազմազան, որքան հագեցած է ներկուսակցական կյանքը, որքան խորն է դեմոկրատիզմը բոլոր արմատական հարցերի լուծման գործում՝ կուսակցության մեջ ընդունելությունից մինչև կադրային քաղաքականությունը, այնքան ուժեղ ու արդյունավետ է կուսակցության ներգործությունը բոլոր հասարակական պրոցեսների վրա։

Կանոնադրության մեջ այս նույն ոգով ճշգրտվում են պետական ու հասարակական կազմակերպությունների կուսակցական ղեկավարման հիմնական սկզբունքները։ Նրանցից յուրաքանչյուրը կոչված է լիակատար ծավալով իրականացնել իր ֆունկցիաները, իսկ նրանց գործունեության կուսակցական ղեկավարումը պետք է կրի պարզորոշ արտահայտված քաղաքական բնույթ, ակտիվորեն նպաստի ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման հետագա զարգացմանը բոլոր օղակներում և բոլոր մակարդակներում։ Առաջարկվող փոփոխությունները ծառայում են կուսակցության անդամի հեղինակության, կոչման ու նշանակության բարձրացմանը, նրա՝ որպես քաղաքական մարտիկի և մասսաների կազմակերպչի դերի բարձրացմանը, կուսակցության գլխավոր գծի ու դիրեկտիվների իրականացման համար նրա պատասխանատվության բարձրացմանը։

Ամբողջությամբ վերցված, առաջարկվող փոփոխությունները կանոնադրությունը կհարստացնեն կյանքի պահանջներից բխող նոր պարագաներով, կնպաստեն կուսակցության կազմակերպական ամրապնդմանը դեմոկրատական ցենտրալիզմի փորձված սկզբունքների հիման վրա, ՍՄԿԿ-ի ղեկավար դերի բարձրացմանը երկրի առջև կանգնած նոր խնդիրների դեմ-հանդիման։

Ընկերնե՛ր, երեկ կայացավ ծրագրի հանձնաժողովի նիստը, որի կողմից էլ ներկայացվում է կուսակցության ծրագրի նոր խմբագրույթի նախագիծը։ Կարծում եմ, որ պլենումում նախագծի մեր քննարկումը կլինի գործարար և արգասավոր։ Ասվածը ոչ պակաս վերաբերում է Հիմնական ուղղությունների նախագծին և ՍՄԿԿ կանոնադրության առաջարկվող փոփոխություններին։

Կենտկոմի պլենումում ներկայացված փաստաթղթերի ընդունումը կբացի ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստության միանգամայն պատասխանատու փուլը՝ էկոնոմիկայի և քաղաքականության կարևորագույն հարցերի շուրջը ժողովրդի հետ կուսակցության մեծ և ուղղակի խորհրդակցության փուլը։

Քաղբյուրոն առաջարկում է հրապարակել այդ փաստաթղթերը և դրանք լայնորեն քննարկել կուսակցական ժողովներում, շրջանային, քաղաքային, մարզային ու երկրամասային կոնֆերանսներում, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում, իսկ հիմնական ուղղությունների նախագիծը քննարկել նաև աշխատավորական կոլեկտիվների, ուսումնական հաստատությունների, զորամասերի և հասարակական կազմակերպությունների ժողովներում։ Սովետները, արհմիությունները և կոմերիտմիությունը կոչված են իրենց խոսքն ասելու։ Համակուսակցական, համաժողովրդական քննարկմանը միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդկանց՝ կոմունիստների և անկուսակցականների մասնակցությունը թույլ կտա ավելի լավ ճշտել կուսակցության ապագա կուրսը, ավելի լրիվ հաշվի առնել բոլոր դասակարգերի, ժողովրդի բոլոր խավերի կամքը, շահերն ու պահանջմունքները։

Ամենագլխավորը, որ մենք պետք է ապահովենք քննարկման ընթացքում, գործարարությունն է և նպատակամիտումը՝ լուծելու կոնկրետ պրակտիկ



հարցերը։ Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ժողովներն ու դիսկուսիաները լինեն բովանդակալից, անցնեն առանց շքամոլության, աղմկարարության և կազմակերպամոլության։ Պարտավոր են դրանց ամենաակտիվ և անմիջական մասնակցությունն ունենալ կուսակցական, պետական և տնտեսական ղեկավար կադրերը։

Նախահամագումարյան փաստաթղթերի ուսումնասիրման և պարզաբանման ամբողջ աշխատանքի կենտրոնը պետք է դառնան աշխատավորական կոլեկտիվը, նրա սկզբնական օղակները՝ տեղամասն ու բրիգադը, ֆերման ու լաբորատորիան։ Այստեղ պետք է առարկայական խոսակցություն ծավալել մեր գործերի մասին, հնկայական ռեզերվները գործի դնելու, ռեսուրսները խնայողությամբ օգտագործելու, առկա թերությունները վերացնելու, առաջավոր փորձը տարածելու մասին։ Կարևոր է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր սովետական մարդ լավ ըմբռնի կուսակցության ծրագրային նպատակներն ու խնդիրները, նրա ներքին ու արտաքին քաղաքականության իմաստը, կարողանա դրանց հետ շաղկապել իր ամենօրյա աշխատանքը։

Այլ խոսքով՝ հենց սկզբից պետք է քննարկմանը տրվի ստեղծագործական բնույթ։ Աշխատավորների լիակատար պաշտպանությունն է վայելում Կենտրոնական կոմիտեի գիծը, որը նպատակամղված է մեր զարգացման կենսական հարցերի նկատմամբ նորարարական մոտեցմանը, այն ամենի վճռական հաղթահարմանը, ինչ ապրել է իր դարը, խանգարում է առաջընթաց շարժմանը։ Մենք այդ գիծը հետևողականորեն կվարենք նաև այսուհետև, հենվելով ամբողջ ժողովրդի կամքի ու ստեղծագործության վրա։

Անկասկած, նախահամագումարյան փաստաթղթերը առաջ կբերեն արձագանքների, առաջարկությունների, նամակների հոսք։ Պետական մեծ հրնչողություն ունեցող նկատառումների հետ միասին նաև կառաջադրվեն կոնկրետ հարցեր, դիտողություններ կարվեն կուսակցական, սովետական, տնտեսական մարմինների աշխատանքի վերաբերյալ։ Ոչ մի օգտակար միտք, ոչ մի առաջարկություն չպետք է մնա առանց ուշադրության։ Կարևոր է, որ փաստաթղթերի քննարկման ընթացքում աշխատավորները իմանան, որ իրենց քննադատական ահազանգերը լսվել են, որ իրենց առաջարկությունների առթիվ համապատասխան միջոցներ են ձեռնարկվում։ Սա մեզ համար սկզբունքային հարց է։

Լավ կլիներ, օգտագործելով Հիմնական ուղղությունների վրա կատարված աշխատանքի փորձը, դրանց քննարկման հետ միաժամանակ ծավալել հնգամյա պլանի մշակումը։ Դա հնարավորություն կընձեռի այն քննարկել և հաստատել անմիջապես համագումարից հետո։

Համագումարի նախապատրաստության եզրափակիչ փուլը բարձր պահանջներ է ներկայացնում մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցներին։ Նրանք կոչված են դառնալու քննարկման համաժողովրդական ամբիոն, ի մի բերելու մասսաների գաղափարները, կարծիքները, փորձը, ձևավորելու աշխատանքային և գաղափարաբարոյական այն բարձր տրամադրությունը, առանց որի անկարելի է որևէ պլանի իրականացումը։

Ընկերնե՛ր, որքան էլ ոգեշնչող լինեն մշակված պլանները, նախատեսված բնագծերին կարելի է հասնել լարված, բարձրարտադրողական աշխատանքով միայն։ Այժմ հատկապես հարկավոր են յուրաքանչյուր սովետական մարդու, յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության կոնկրետ գործերը։ Հասել է է՛լ ավելի ակտիվ գործողությունների ժամանակը, և դա այսօր գլխավորն է։ Կուսակցական, սովետական, տնտեսական, արհմիութենական կազմակերպությունները պարտավոր են ամբողջ պոտենցիալը, մեր բոլոր ռեսուրսներն ու հնարավորությունները և ամենից առաջ մարդկային գործոնը մոբիլիզացնել հետևողականորեն կատարելու ծառացած խնդիրները։

Այդպիսի աշխատանք մենք սկսել ենք։ Ընդունվել են կարևոր որոշումներ, խոշոր միջոցառումներ են իրականացվում տնտեսական, սոցիալական, գաղափարախոսական ոլորտներում։ Հարկավոր է այսուհետև էլ գործել մշակ-

ված քաղաքական գծի ոգով, անշեղորեն ընթանալ նախատեսված կուրսով։ Ամրապնդելով կարգապահությունը և կարգուկանոնը ամեն ինչում, ակտիվորեն օգտագործելով բարոյական ու նյութական ազդակները, ավելի ու ավելի մեծ ասպարեզ բացելով մասսաների նախաձեռնության և ստեղծագործության համար, կարևոր է այսուհետև էլ արագացնել առաջընթաց շարժման տեմպերը։

Աշխատավորական կոլեկտիվների կազմակերպչական, քաղաքական և տնտեսական բոլոր ջանքերը, նրանց ամբողջ եռանդը պետք է այնպես կենտրոնացնել, որ ամենալավ արդյունքներով ավարտենք թե՛ այս տարին և թե ամբողջ հնգամյակը, արժանավայել դիմավորենք մեր լենինյան կուսակցության XXVII համագումարը։ Այժմ սա թե՛ գործնական և թե քաղաքական ամենաանհետաձգելի խնդիրն է։

Պատմական փորձը համոզիչ կերպով վկայում է. ժողովրդի երջանկության ամենավսեմ երազանքը, եթե նույնիսկ պատկանում է հանճարին, սոսկ ազնիվ երազանք է մնում, եթե չի տիրապետում միլիոնավորների մտքերին ու սրտերին, իսկ ժողովրդական զանգվածների սեփականությունը դարձած առաջավոր գաղափարները վերածվում են առաջադիմության հզոր շարժիչ ուժի։

Լենինյան կուսակցության քաղաքականությունը, նրա բանականությունն ու խիղճը ճիշտ են արտահայտում այն, ինչ գիտակցում է ժողովուրդը, նրա խոհերը, իղձերն ու հույսերը։ Եվ մենք համոզված ենք, որ կոմունիզմի մեծ գործը, որին նվիրվել է կուսակցությունը, անպարտելի է։

(Զեկուցումը լսվեց մեծ ուշադրությամբ և ընդունվեց երկարատև ծափահարություններով)։

---

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք ՆԱԽԱԳԻԾ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԾՐԱԳԻՐԸ

## (Նոր խմբագրույթ)

## ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ ծնված սովետական երկիրը մեծ ու փառավոր ուղի է անցել։ Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ նվաճվել են համաշխարհային պատմական հաղթանակներ։ Հետևողականորեն արտահայտելով բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների շահերը, զինված մարքս-լենինյան ուսմունքով, հեղափոխական պայքարի ու սոցիալիստական շինարարության բազմահարուստ փորձով, ՍՄԿԿ-ն սովետական ժողովրդին վստահորեն առաջնորդում է կոմունիստական արարման ու խաղաղության կուրսով։

Կուսակցությունը քաղաքական ասպարեզ եկավ որպես հասարակության սոցիալիստական վերափոխման՝ կոմունիստների առաջին ծրագրային փաստաթղթի՝ «Կոմունիստական կուսակցության մանիֆեստի» մեջ հռչակված գաղափարների, միջազգային բանվորական շարժման հեղափոխական ավանդույթների, Փարիզի կոմունայի հերոսների անմար սխրանքի արժանավոր ժառանգորդ։ Գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կարլ Մարքսը և Ֆրիդրիխ Էնգելսը, հենվելով դասակարգային պայքարի պատմական փորձի, մարդկության առաջավոր մտքի նվաճումների վրա, հայտնագործեցին հասարակական զարգացման օբյեկտիվ օրենքները, տեսականորեն ապացուցեցին կապիտալիզմի խորտակման անխուսափելիությունը, հիմնավորեցին պրոլետարիատի համաշխարհային պատմական առաքելությունը՝ որպես նոր, սոցիալիստական կարգերը կերտողի։ Նրանց «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» բոցաշունչ կոչը այսօր էլ մնում է բանվորական շարժման մարտական լոզունգը։

Մարքսի և Էնգելսի գործի հանճարեղ շարունակող Վլադիմիր Իլյիչ Լենինը պատմական նոր պայմաններում համակողմանիորեն զարգացրեց նրանց ուսմունքը, պատասխաններ տվեց արդիականության արմատական հարցերին, բանվորական շարժումը զինեց սոցիալիստական հեղափոխության ու սոցիալիստական շինարարության տեսությամբ, պատերազմի ու խաղաղության պրոբլեմներին վերաբերող հայացքների գիտական համակարգով։

Մարքսիզմ-լենինիզմը միասնական հեղափոխական ուսմունք է։ Մեծ Լենինի ստեղծած կուսակցությունը դարձավ բանվորական շարժման հետ գիտական սոցիալիզմի միացման, տեսության ու պրակտիկայի անխզելի միասնության կենդանի մարմնավորումը։

Կուսակցությունը միշտ եղել է, կա և կլինի մարքսիզմ-լենինիզմի կուսակցություն, հեղափոխական գործողության կուսակցություն։

Յուրաքանչյուր պատմական փուլում ՍՄԿԿ-ն լուծել է իր ծրագրերում գիտականորեն հիմնավորված խնդիրներ։

Առաջին ծրագիրն ընդունելով երկրորդ համագումարում՝ 1903 թվականին, բոլշևիկյան կուսակցությունը Ռուսաստանի բանվոր դասակարգին, գյուղացիությանը, բոլոր աշխատավորներին պայքարի տարավ՝ տապալելու ցարական ինքնակալությունը, իսկ ապա՝ կապիտալիստական կարգերը, անցավ Ռուսաստանի երեք հեղափոխությունների բոցերի միջով։ 1917 թվականի հոկտեմբերին բանվոր դասակարգը քաղաքական իշխանությունը վերցրեց իր ձեռ-

քը։ Պատմության մեջ առաջին անգամ առաջացավ բանվորների ու գյուղացիների պետություն։ Սկսվեց նոր աշխարհի արարումը։

Երկրորդ ծրագիրն ընդունելով VIII համագումարում՝ 1919 թվականին, կուսակցությունն առաջադրեց սոցիալիզմի կառուցման խնդիրը։ Ընթանալով չտրորված ուղիներով, հաղթահարելով հսկայական դժվարություններ, դրսևորելով չտեսնված հերոսություն, սովետական ժողովուրդը կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ կենսագործեց Լենինի մշակած սոցիալիստական շինարարության պլանը։ Սոցիալիզմը մեր երկրում դարձավ իրողություն։

Երրորդ ծրագիրն ընդունելով XXII համագումարում՝ 1961 թվականին, կուսակցությունը հսկայական աշխատանք ծավալեց կոմունիստական շինարարության բոլոր ուղղություններում։ Սովետական ժողովուրդը մեծ հաջողությունների հասավ արտադրողական ուժերի, տնտեսական ու սոցիալական հարաբերությունների, սոցիալիստական դեմոկրատիայի, մշակույթի զարգացման ասպարեզում, նոր մարդու ձևավորման գործում։ Երկիրը թևակոխեց զարգացած սոցիալիզմի փուլը։ Աճեց Սովետական Միության դերը որպես պայքարի հզոր գործոն ընդդեմ ճնշման, ագրեսիայի և պատերազմի իմպերիալիստական քաղաքականության, հանուն խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական առաջադիմության։

Երրորդ ծրագրի ընդունումից հետո անցած ժամանակը հաստատեց նրա տեսական ու քաղաքական գլխավոր հիմնադրույթների ճշտությունը։ Դրա հետ մեկտեղ՝ կուտակված փորձը, երկրի ներքին կյանքում և համաշխարհային ասպարեզում կատարված փոփոխությունների գիտական իմաստավորումը հնարավորություն են ընձեռում ավելի ճշգրիտ և ավելի կոնկրետ սահմանելու սովետական հասարակության զարգացման հեռանկարները, վերջնական նպատակին՝ կոմունիզմին հասնելու ուղիներն ու միջոցները, միջազգային քաղաքականության խնդիրները պատմական նոր պայմաններում։

ՍՄԿԿ-ի երրորդ ծրագիրը իր ներկա խմբագրությամբ սոցիալիզմի պլանաչափ ու համակողմանի կատարելագործման ծրագիրն է, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու հիման վրա դեպի կոմունիզմ սովետական հասարակության հետագա առաջընթացի ծրագիրը։ Դա հանուն խաղաղության ու սոցիալական առաջադիմության պայքարի ծրագիրն է։

# ԱՌԱՋԻՆ ՄԱՍ

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻՑ ՍՈՑԻԱԼԻԶՄԻՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ ԱՆՑՆԵԼԸ ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ՀԻՄՆԱԿԱՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆՆ Է

## I. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը և սոցիալիզմի կառուցումը ՍՍՀՄ-ում

Մարդկության դեպի սոցիալիզմ կատարած համաշխարհային պատմական շրջադարձը, որն սկսվեց Հոկտեմբերյան հեղափոխությամբ, հասարակական զարգացման օրինաչափ հետևանքն է։

Կապիտալիզմը մարդկության պատմության մեջ շահագործողական վերջին հասարակարգն է։ Հուժկու մղում տալով արտադրողական ուժերի զարգացմանը, նա այնուհետև խոչընդոտի վերածվեց հասարակական առաջադիմության ճանապարհին։

Կապիտալիզմի ամբողջ պատմությունը նրա հիմնական հակասության՝ արտադրության հանրային բնույթի և յուրացման մասնավոր կապիտալիստական ձևի միջև եղած հակասության, բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների շահագործման ուժեղացման, աշխատանքի ու կապիտալի, ճնշվածների ու ճնշողների միջև պայքարի սրման պատմություն է, դա աշխատավոր մարդկանց անհամար աղետներ բերող տնտեսական ճգնաժամերի, սոցիալ-քաղաքական ցնցումների, զավթողական պատերազմների ու կոնֆլիկտների պատմություն է։

Կապիտալի համակենտրոնացման ու կենտրոնացման պրոցեսը XX դարի սկզբին հանգեցրեց կապիտալիստների մոնոպոլիստական հզոր միությունների ստեղծման, որոնք զավթեցին տնտեսական ու քաղաքական ամբողջ կյանքի գլխավոր լծակները։ Կապիտալիզմը թևակոխեց իր բարձրագույն և վերջին ստադիան՝ իմպերիալիզմի ստադիան։ Լենինի արտահայտությամբ՝ «իմպերիալիստական կապիտալիզմը դարձավ ազգերի մեծագույն ճնշողը», ագրեսիվ պատերազմների հիմնական աղբյուրը։

Իմպերիալիզմի ստադիայում նյութական պայմաններ են ստեղծվում կապիտալիստական արտադրական հարաբերությունները սոցիալիստականով փոխարինելու համար, հասունանում են հաղթական սոցիալիստական հեղափոխության օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալները։ Հին հասարակության հեղափոխական վերափոխիչի և նորի կերտողի առաքելությունը պատմությունը դրել է բանվոր դասակարգի վրա։ Իրականացնելով այն՝ նա արտահայտում է ո՛չ միայն իր դասակարգային շահերը, այլև բոլոր աշխատավորների շահերը։

Ռուսաստանում իմպերիալիզմի հակասությունները, որոնք խորանում էին ցարիզմի գործադրած ճնշումով, ճորտատիրության մնացուկներով, դրսևորվեցին բացառիկ ուժով։ Ռուսաստանը եղավ միջազգային իմպերիալիզմի առավել թույլ օղակը, նրա հակասությունների հանգուցակետը։ Հենց այստեղ տեղափոխվեց համաշխարհային հեղափոխական շարժման կենտրոնը։ Ռուսաստանի պրոլետարիատի առջև ծառացավ մի դժվարագույն և անչափ պատասխանատու խնդիր՝ առաջինը փշրել բուրժուազիայի համաշխարհային տիրապետության շղթան։ Այդ բանը կարելի էր անել նոր տիպի կուսակցության՝ պրոլետարիատի մարտական հեղափոխական կազմակերպության ղեկավարությամբ միայն։

Բոլշևիկյան կուսակցության կազմավորումը շրջադարձային կետ եղավ Ռուսաստանի և միջազգային բանվորական շարժման պատմության մեջ։ Դա եղավ հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջմունքի, պրոլետարիատի դասակարգային պայքարի արտահայտությունը, Լենինի, նրա շուրջը համախմբված մարքսիստների գիտական խորաթափանցության արգասիքը, նրանց քաղաքական ու կազմակերպչական անդուլ գործունեության արդյունքը։ «Տվեք մեզ հեղափոխականների կազմակերպություն, և մենք շուռ կտանք Ռուսաստանը» լենինյան կրքոտ կոչը ջերմ արձագանք գտավ բանվորների, Ռուսաստանի հասարակության առաջավոր մարդկանց, աշխատավոր ժողովրդի լավագույն ներկայացուցիչների մտքի ու սրտի մեջ։ Լենինը մշակեց կուսակցության գաղափարախոսական, քաղաքական ու կազմակերպական սկզբունքները, մասսաների շրջանում նրա աշխատանքի մեթոդները։ Նոր տիպի կուսակցությունը ստեղծվում էր ռևիզիոնիզմի և աջ օպորտունիզմի, դոգմատիզմի և ձախ ավանտյուրիզմի դեմ մղվող անհաշտ մարտերում։

Արդեն 1905—1907 թվականների հեղափոխությունը՝ իմպերիալիզմի դարաշրջանի առաջին ժողովրդական հեղափոխությունը, ցուցադրեց բանվոր դասակարգի ուժը, եղավ պրոլետարիատի գալիք հաղթանակների նախերգանքը։ 1917 թվականի փետրվարյան բուրժուադեմոկրատական հեղափոխությունը սրբեց-տարավ ցարիզմը։ Բայց այն ժողովրդական զանգվածներին չազատեց սոցիալական ու ազգային ճնշումից, իմպերիալիստական պատերազմի բեռից, չլուծեց այն հակասությունները, որ բզկտում էին ռուսաստանյան հասարակությունը։ Ժամանակի անվիճելի պահանջը դարձավ սոցիալիստական հեղափոխությունը։

Ռուսաստանի բանվոր դասակարգը աչքի ընկավ բարձրագույն հեղափոխականությամբ և կազմակերպվածությամբ։ Նրա գլուխ կանգնած էր քաղաքական մարտերում կոփված, առաջավոր հեղափոխական տեսությանը տիրապետող բոլշևիկյան կուսակցությունը։ Լենինը կուսակցությանը զինեց պայ-

քարի հստակ հեռանկարով՝ ստեղծելով իմպերիալիզմի պայմաններում նախ մեկ կամ առանձին վերցրած մի քանի երկրներում պրոլետարական հեղափոխության հաղթանակի հնարավորության մասին ուսմունքը։

Բոլշևիկների կուսակցության կոչով և նրա ղեկավարությամբ բանվոր դասակարգը վճռական մարտի ելավ ընդդեմ կապիտալի իշխանության։ Կուսակցությունը մի հուժկու հոսանքի մեջ միավորեց պրոլետարական պայքարը հանուն սոցիալիզմի, գյուղացիական պայքարը հանուն հողի, Ռուսաստանի ճնշված ժողովուրդների ազգային ազատագրական պայքարը, իմպերիալիստական պատերազմի դեմ, խաղաղության օգտին ծավալված համաժողովրդական շարժումը և այն նպատակամղեց բուրժուական կարգերի տապալմանը։

**Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը դարձավ համաշխարհային պատմության բեկումնային իրադարձություն, որոշեց համաշխարհային զարգացման գլխավոր ուղղությունը և հիմնական միտումները։ Նա դրեց կապիտալիզմը նոր, կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայով փոխարինելու անհաղթահարելի պրոցեսի սկիզբը։**

Պատմության մեջ առաջին անգամ առաջացավ պրոլետարիատի դիկտատուրայի պետություն։ Բանվոր դասակարգը, իր շուրջը համախմբելով բոլոր աշխատավորներին, ձեռնամուխ եղավ կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի բազմաբարդ խնդիրների լուծմանը, նոր հասարակության հիմքերի ստեղծմանը։

Քաղաքական իշխանության նվաճումը, քաղաքացիական պատերազմի ռազմաճակատներում տարած հաղթանակները, օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի ջախջախումը, նոր կյանքի կառուցման բացված հեռանկարները առաջ բերեցին աշխատավոր զանգվածների ուժերի և հեղափոխական եռանդի հուժկու հորդում։ Նրանք հաղթահարեցին տնտեսական քայքայման, բուրժուազիայի հակահեղափոխական դավադրությունների ու սաբոտաժի, երկրի տեխնիկատնտեսական ու կուլտուրական հետամնացության հետևանքով առաջացած զրկանքներն ու դժվարությունները։ Անցման ժամանակաշրջանում դասակարգային պայքարը մերթ ընդ մերթ սուր բախումների բնույթ էր ստանում։ Սովետների երկիրը ենթարկվում էր թշնամական կապիտալիստական շրջապատի կատաղի գրոհներին, ռազմական ու քաղաքական բազմաթիվ պրովոկացիաների։

Հենվելով մասսաների խանդավառության վրա, ետ մղելով աջ և «ձախ» օպորտունիստների հարձակումները, ամրապնդելով իր գաղափարաքաղաքական ու կազմակերպական միասնությունը, կուսակցությունը անշեղորեն վարում էր սոցիալիզմի կառուցման լենինյան գլխավոր գիծը։

Ժողովրդի ձեռքն անցան արտադրության հիմնական միջոցները։ Հողի, գործարանների, ֆաբրիկաների, բանկերի **ազգայնացումը** անհրաժեշտ նախադրյալներ ստեղծեց հանրային սոցիալիստական սեփականության հաստատման ու զարգացման, տնտեսության պլանային սիստեմի կազմակերպման համար։ Երկրի **ինդուստրացումը** Սովետական Միությունը վերածեց հզոր արդյունաբերական տերության։ Տնտեսական հարաբերություններում, գյուղացիության ամբողջ կացութաձևում խոշոր շրջադարձ եղավ գյուղատնտեսության **կոլեկտիվացումը**։

Սոցիալ-տնտեսական ամուր հիմքի վրա դրվեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ **Կուլտուրական հեղափոխության** շնորհիվ վերացվեց անգրագիտությունը, լայն ասպարեզ բացվեց աշխատավոր մարդու ստեղծագործական ուժերի զարգացման, նրա հոգևոր ծաղկման համար, ձևավորվեց սոցիալիստական մտավորականություն, մարքս-լենինյան գաղափարախոսությունը տիրապետող դարձավ սովետական մարդկանց գիտակցության մեջ։

Սոցիալիզմի ակնառու նվաճումն է **ազգային հարցի** լուծումը։ Հոկտեմբերի հաղթանակը մեկընդմիշտ վերջ դրեց ազգային ճնշմանը և ազգերի անիրավահավասարությանը։ Հսկայական դեր խաղաց կամավոր հիմունքներով, ազատ իրավահավասար ժողովուրդների միավորումը միասնական բազմազգ պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության



մեջ։ Սոցիալիստական շինարարության ընթացքում ապահովվեց նախկին ազգային ծայրամասերի տնտեսական, սոցիալական ու մշակութային արագ առաջընթացը։ Անցյալի գիրկն անցավ ազգային երկպառակությունը, կյանքի նորմ դարձան ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների եղբայրական բարեկամությունը, սերտ համագործակցությունը և փոխօգնությունը։

Այս ամենը նշանակում էր, որ կատարվել է համաշխարհային պատմական կարևորության սոցիալական հեղաշրջում՝ մեկընդմիշտ վերջ է տրված մասնավոր սեփականության դարավոր տիրապետությանը, վերացված է մարդու կողմից մարդու շահագործումը։ Բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության, բոլոր ազգությունների աշխատավորների ընդհանուր շահերի բազայի վրա հաստատվեց սովետական հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը։ Աշխատավոր մարդը դարձավ երկրի լիիշխան տերը։ **ՍՍՀՄ-ում հիմնականում կառուցվեց սոցիալիստական հասարակություն։**

Նոր կարգերի համար ահեղ փորձություն եղավ Հայրենական մեծ պատերազմը։ Համախմբվելով կուսակցության շուրջը, ցուցաբերելով չտեսնված հերոսություն, սովետական ժողովուրդը և նրա զինված ուժերը խորտակիչ պարտության մատնեցին համաշխարհային իմպերիալիստական ռեակցիայի հարվածային ջոկատին։

Իր հաղթանակով Սովետական Միությունը վճռական ավանդ ներդրեց նացիստական ստրկությունից Եվրոպայի ժողովուրդների ազատագրման, հիտլերիզմի խավարամտությունից համաշխարհային քաղաքակրթությունը փրկելու գործում։ Գերմանական ֆաշիզմի և ճապոնական միլիտարիզմի ջախջախումը նոր հնարավորություններ բացեց խաղաղության, դեմոկրատիայի, ազգային ազատագրության և սոցիալիզմի օգտին ժողովուրդների պայքարի համար։ Սովետական ժողովրդի հաղթանակը է՛լ ավելի բարձրացրեց սովետական պետության միջազգային հեղինակությունը։

Կարճ ժամանակամիջոցում ՍՍՀՄ-ը բուժեց պատերազմի ծանր վերքերը, զգալիորեն ամրապնդեց իր տնտեսական, գիտատեխնիկական և պաշտպանական պոտենցիալը, ամրապնդեց միջազգային դիրքերը։ **Սոցիալիզմը մեր երկրում հաղթանակեց լիովին և վերջնականապես։**

Հենվելով ձեռք բերվածի վրա, սովետական հասարակությունը շարունակում է վստահորեն առաջ ընթանալ տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր զարգացման բոլոր ուղղություններով։ Երկրում ստեղծվել է միասնական ժողովրդատնտեսական համալիր։ Նոր խոշոր շրջաններ են յուրացվել երկրի հյուսիսում և արևելքում, բարելավվել է բնության օգտագործումը։ Զգալիորեն աճել են ազգային եկամուտը, հանրային աշխատանքի արտադրողականությունը։ Էապես բարձրացել է ժողովրդի բարեկեցության մակարդակը, իրացվել է բնակարանային շինարարության վիթխարի ծրագիր։ Բազմապատկվել է ժողովրդի հոգևոր հարստությունը, իրականացվել է անցում ընդհանուր միջնակարգ կրթության, ակնառու հաջողությունների են հասել սովետական գիտությունն ու տեխնիկան։ Սովետական Միությունում են կառուցվել առաջին ատոմային էլեկտրակայանը և առաջին ատոմային սառցահատը, արձակվել Երկրի առաջին արհեստական արբանյակը, իրականացվել առաջին օդաչուավոր տիեզերանավի թռիչքը։

Ամրապնդվել են սոցիալիստական հասարակական հարաբերությունները։ Ձևավորվել է մարդկանց սոցիալական և ինտերնացիոնալ նոր հանրություն՝ սովետական ժողովուրդը։

Ցուցաբերելով բոլշևիկյան սկզբունքայնություն և ինքնաքննադատություն, հենվելով մասսաների աջակցության վրա, կուսակցությունը մեծ աշխատանք է կատարել անհատի պաշտամունքի հետևանքները, կուսակցական և պետական ղեկավարման լենինյան նորմերից թույլ տրված շեղումները վերացնելու, սուբյեկտիվիստական, վոլյունտարիստական բնույթի սխալները շտկելու համար։ Հետագա զարգացում է ստացել սոցիալիստական դեմոկրատիան, ամրապնդվել է սովետական օրինականությունը։

Սոցիալիզմի պատմական նվաճումը հանդիսացավ ռազմաստրատեգիա-

Լայնորեն մասնակցելով աշխատանքի համամիութենական բաժանմանը՝ Հայաստանն այժմ երկրի ժողովրդատնտեսական միասնական համալիրին տալիս է էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, փոփոխական հոսանքի գեներատորներ, էլեկտրաշարժիչներ, տրանսֆորմատորներ, կաբել և հաղորդալարեր, եռակցող սարքեր, պոմպեր, կոմպրեսորներ, մետաղամշակման հաստոցներ, ամենատարբեր սարքեր, ավտոմոբիլներ, ինքնաբարձիչներ, դողեր, շինանյութեր, քիմիական, թեթև և սննդի բազմազան արտադրանք։

Որակական խոր փոփոխություններ են կատարվել գյուղատնտեսության մեջ։ Այսօր հանրապետությունում գործում է ոռոգման 18 հազար կիլոմետրանոց ցանց, որի շնորհիվ ոռոգվում է 310 հազար հեկտար հողատարածություն։ Գյուղատնտեսությունն ունի հզոր մեքենայական պարկ՝ 15,2 հազար տրակտոր, երկու հազար յոթ հարյուր հացահատիկային և սիլոսահավաք կոմբայններ։ Հայաստանի գյուղատնտեսությունն այսօր իրենից ներկայացնում է տնտեսապես ամուր, նյութատեխնիկական հզոր բազայով զինված, բարձր ագրոկուլտուրա ունեցող արտադրություն, ուր հետևողականորեն զարգանում են միջտնտեսային կապերն ու ագրոարդյունաբերական ինտեգրացիան, ուր գործադրվում է ժամանակակից տեխնոլոգիան, հետևողականորեն ծավալվում են մեքենայացման, քիմիացման ու մելիորացման աշխատանքներ։

Աննախընթաց ծաղկման են հասել գիտությունը, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Այս ամենը վառ կերպով վկայում է սոցիալիզմի ստեղծարար մեծ ուժը, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը, ՍՍՀՄ բոլոր ազգերի համակողմանի զարգացման նկատմամբ կուսակցության և կառավարության մշտական հոգատարությունը։ Սովետական Հայաստանի օրինակը, նրա պատմական փորձը վկայում են, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակմամբ և մեկուսացմամբ, այլ սոցիալիստական ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ։

Առաջնորդվելով ՍՄԿԿ XXVI համագումարի և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարի որոշումներով, ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումում առաջադրած խնդիրներով՝ հանրապետության աշխատավորները հաջողությամբ են կատարում տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքները տնտեսական ու սոցիալական զարգացման բոլոր հիմնական ցուցանիշների գծով։ Նախնական արդյունքների հիման վրա կարելի է ասել, որ հանրապետությունը կկատարի 1985 թվականի և ամբողջությամբ վերցրած ընթացիկ հնգամյակի պլանային ցուցանիշները։ Արդյունաբերական արտադրանքի իրացման 1985 թվականի ինն ամսվա պլանը կատարվել է 102 տոկոսով, ապրանքային արտադրանքի ծավալինը՝ 102,5 տոկոսով։ Պլանից դուրս թողարկվել է 133,9 միլիոն ռուբլու արտադրանք։

Հանրապետության արդյունաբերության մեջ շարունակվում է լայնամասշտաբ տնտեսափորձը, որին մասնակցում են 78 ձեռնարկություն և միավորում։ Այդ կոլեկտիվները տվել են հանրապետության արդյունաբերության իրացրած արտապլանային արտադրանքի 45,4 տոկոսը, որակի բարձր կարգի արտապլանային արտադրանքի 85,3 տոկոսը։

Չնայած անբարենպաստ եղանակին, գյուղի աշխատավորները կատարել են հիմնական գյուղատնտեսական մթերքների արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները։

Իրենց աշխատանքը բարելավում են նաև շինարարական կազմակերպությունները։ Առաջադրանքները կատարում են տրանսպորտի, կապի, կենցաղային սպասարկման աշխատողները։ Գործերը շտկվում են առևտրի ասպարեզում։

Իրողություն է, սակայն, որ ժողովրդական տնտեսության ոչ բոլոր օղակներում և ճյուղերում են միջոցառումներ իրականացվել թերությունները վերացնելու, չօգտագործված ռեզերվները ներգրավելու, հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, պետական ու պլանային կարգապահությունը պահպանելու նպատակով։



Հանրապետության ձեռնարկությունների և արտադրամիավորումների մեծ մասը ընթացիկ տարում կիրառել է արտադրանքի իրացման ծավալը ըստ մատակարարումների առաջադրանքների ու պարտավորությունների հաշվարկելու կարգը։ Ձեռնարկությունների այդ խումբը, ընդհանուր առմամբ, իրացման պլանները կատարելով հանդերձ, ըստ մատակարարումների առաջադրանքը թերակատարել է 2,4 տոկոսով։ Այս ցուցանիշի գծով պլանները չեն կատարել զգալի թվով ձեռնարկություններ, որոնք պակաս են մատակարարել միլիոնավոր ռուբլիների արտադրանք։ Չեն կատարվել մի շարք կարևորագույն արտադրատեսակների թողարկման առաջադրանքները, պլանից պակաս են արտադրվել զգալի քանակությամբ կաուստիկ սոդա, քիմիական թելեր, ավտոդողեր, շիֆեր, գորգեր, բամբակյա և մետաքսյա գործվածքներ, սպիտակեղեն, տրիկոտաժ, կենցաղային ժամացույցներ և այլ արտադրանք։

Ընթացիկ հնգամյակի եզրափակիչ տարում հանրապետության արդյունաբերական միավորումների ու ձեռնարկությունների աշխատավորական շատ կոլեկտիվներ, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի ու կապի աշխատողներ ՍՄԿԿ XXVII համագումարն արժանավայել դիմավորելու պատվին լայնորեն ծավալված սոցիալիստական մրցության շնորհիվ իրենց ջանքերը նպատակամղում են պետական պլանային առաջադրանքների ժամկետից շուտ կատարմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանը։

ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը պետպլանի, մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ մշակել է հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման 1986 թվականի պետական պլանի և տասներկուերորդ հնգամյակի նախագծերը, որոնք հանգամանորեն քննարկվեցին հանրապետական կուսակցական ակտիվի 1985 թ. հոկտեմբերի 12-ի ժողովում։ Այդ նախագծերը ամբողջովին բխում են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումի, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1985 թվականի մայիսյան պլենումի որոշումներից, երկրի տնտեսական և սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի ու մինչև 2000 թ. ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների դրույթներից։ Հայկական ՍՍՀ տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի պլանները նպատակամղված են հիմնական ցուցանիշների բարելավմանը, արտադրության ծավալների և արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրանքի կարևորագույն տեսակների թողարկման աճի տեմպերի արագացմանը, նախատեսվում է է՛լ ավելի խթանել արտադրանքի էներգատարությունը և նյութատարությունը նվազեցնելու ասպարեզում կատարված դրական տեղաշարժերը, ինչը իրական նախադրյալներ կստեղծի ապահովելու ՍՄԿԿ Կենտկոմի պահանջի կատարումը՝ ժողովրդական տնտեսության ռեսուրսների պահանջմունքների աճը ծածկելու դրանց տնտեսման հաշվին։

Ինչպես նշվում է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի նախագծում, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու գերագույն իմաստը կուսակցությունը համարում է ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացումը, սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերի բարելավումը, անհատի ներդաշնակ զարգացման համար բարենպաստ պայմանների ստեղծումը։ Այդ նպատակով զգալի աշխատանք է կատարվում մեր հանրապետությունում։ Աճում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը։ Միութենական ենթակայության 20 ձեռնարկություններ լրացուցիչ կերպով մասնակից են դարձվել դրանց արտադրությանը։ Բարելավվում է սպասարկման ոլորտի աշխատանքը։ Սակայն ժողովրդական սպառման ապրանքների թողարկումը շեշտակի ավելացնելու, դրանց ապրանքային տեսքը բարելավելու աշխատանքը բավարար արդյունավետությամբ չի տարվում։ Մի շարք ձեռնարկություններ դանդաղ են նորացնում արտադրանքի տեսականին, չեն դադարեցվում հնացած կառուցվածքներով ու մոդելներով ապրանքների թողարկումն ու մատակարարումը առևտրի ցանցին։

Ամեն ինչ հանուն մարդու բարօրության. ծրագրային այս դրույթն այսօր նոր իմաստ ու բովանդակություն է ստանում։ Դրա վառ ապացույցն է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկման ոլորտի

զարգացման 1986—2000 թվականների կոմպլեքսային ծրագիրը, որը ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների բաղկացուցիչ մասն է։ Կոմպլեքսային ծրագիրը նախատեսում է մեծացնել ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, ընդլայնել դրանց տեսականին և բարձրացնել որակը, զարգացնել բնակչության սպասարկումը, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ջանքերը կենտրոնացնել ոչ պարենային ապրանքների արտադրության և իրացման, ինչպես նաև սպասարկման ոլորտի մերձավոր ու հեռանկարային խնդիրների լուծման վրա։

Ծրագրի մեջ ընդգծվում է, որ անհրաժեշտ է ժողովրդական սպառման ապրանքների թողարկումն անշեղորեն ավելացնել արտադրությունն ինտենսիվացնելու հաշվին, նրա կազմակերպման բարելավման, կարողությունների արդյունավետ օգտագործման, ձեռնարկությունների վերակառուցման ու տեխնիկական վերազինման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, հումքի ու նյութերի ժամանակակից տեսակների կիրառման, արտադրանքի նյութատարության նվազեցման, ռեսուրսների խնայողական օգտագործման հիման վրա։ Նախատեսվում է զգալիորեն ավելացնել գործվածքեղենի, հագուստի, կոշկեղենի արտադրությունը, բարձրացնել բնակչության ապահովվածությունը կենցաղային բարդ տեխնիկայի բոլոր տեսակներով և բազմազան սպասարկումներով։

Իր տարածքում ապահովելով տնտեսական ու սոցիալական կոմպլեքսային զարգացումը՝ յուրաքանչյուր միութենական հանրապետություն պետք է ծանրակշիռ ավանդ ներդնի ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ընդլայնելու, առևտուրն ու սպասարկումների ոլորտը զարգացնելու՝ ծրագրով սահմանված առաջադրանքների իրականացման գործում։

Մեծ ծավալի առաջադրանքներ են նախատեսված Հայկական ՍՍՀ-ում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը զարգացնելու նպատակով։ Պլանավորված է ձեռնարկությունների տեխնիկական վերազինման, աշխատանքի կազմակերպման բարելավման հիման վրա 1990 թվականին թողարկել 174, 2000 թվականին՝ 252 մլն քմ գործվածքեղեն, համապատասխանաբար՝ 131 և 178 մլն հատ տրիկոտաժեղեն, 30 և 38 մլն զույգ կոշկեղեն։ Այդ ընթացքում գործարկել 55 մլն քմ անհյուսածո կտորեղենի թողարկման կարողություններ, կառուցել կարի և կոշիկի ֆաբրիկաներ, ավելացնել բարձրորակ արտադրանքի, առանձնապես նորաձև կոշկեղենի արտադրությունը։ Նախատեսվում է ավելի լայնորեն օգտագործել մեքենաշինական ձեռնարկությունների հնարավորությունները կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների թողարկման համար։ Խնդիր է դրվում բարելավել լեռնային ու նախալեռնային շրջանների բնակչության առևտրական ու կենցաղային սպասարկումը։ Նախատեսվում է տրանսպորտի, կապի և հյուրանոցային տնտեսության սպասարկումների ընդլայնում։

Բարձրացվում են մինիստրությունների, գերատեսչությունների, ժողովրդական դեպուտատների տեղական սովետների դերն ու պատասխանատվությունը անհրաժեշտ ապրանքների և սպասարկումների նկատմամբ բնակչության պահանջմունքները բավարարելու, տեղերում եղած ռեզերվներն ու հնարավորություններն ավելի լրիվ օգտագործելու համար։

Կուսակցության քաղաքականությունն արտացոլում է սովետական մարդկանց կենսական շահերը, նախատեսում բնակչության պահանջմունքները բավարարել նոր, որակապես ավելի բարձր մակարդակով։

Մեկ տարի է անցել «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման ընդունումից, որը հանրապետությունում ընկալվեց որպես Հայաստանի կուսակցական կազմակերպության, հանրապետության աշխատավորների բարօրության, նրանց կոմունիստական դաստիարակության նկատմամբ կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի հոգատարության մի նոր, վառ արտահայտություն։ Կուսակցական այդ կարևորագույն փաստաթղթի ընդունումից հետո



անցած ժամանակը բնորոշվում է հանրապետության աշխատավորների կոմունիստական դաստիարակության ուժեղացման, բարոյաքաղաքական առողջ մթնոլորտի հաստատման, սոցիալիստական ապրելակերպի հետագա ամրապնդման միտումով։ Գաղափարաքաղաքական դաստիարակությունն այսուհետև իր բոլոր ձևերով կոչված է առավելագույնս շաղկապվելու մեր օրերի գլխավոր խնդրի՝ սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հետ։

Այն, ինչ արված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների իրականացման, գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման ուղղությամբ, առաջադրված ծրագրի կենսագործման սկիզբն է միայն։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է հետևողականորեն կատարելագործել կոմունիստական դաստիարակության ամբողջ պրոցեսը, բարձրացնել մասսաների աշխատանքային և քաղաքական ակտիվությունը, կոմունիստների, բոլոր աշխատավորների ջանքերը նպատակամղել կուսակցության նոր, վիթխարի կանխագծումների իրականացմանը։

Այսօր կուսակցությունը վարում է երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, էկոնոմիկային մեծ դինամիզմ հաղորդելու, արտադրության արդյունավետության համակողմանի աճ ապահովելու կուրս։ Մոտակա ժամանակաշրջանի և ավելի մեծ հեռանկարի մեր քաղաքականությունը վերջնականապես կորոշի ՍՄԿԿ XXVII համագումարը։ Այժմ արդեն պարզ է, թե ինչպես պետք է զարգանա ժողովրդական տնտեսությունը տասներկուերորդ հնգամյակում և մինչև երրորդ հազարամյակի սկիզբը։ Առաջիկա երեք հնգամյակի ընթացքում կապահովվի արդյունաբերական պոտենցիալի այնպիսի աճ, որը կգերազանցի սովետական իշխանության բոլոր նախընթաց տարիներում ստեղծվածը։ Այդպիսի տեմպեր թելադրում է սովետական մարդկանց բարեկեցությունը բարձրացնելու, երկրի պաշտպանունակությունը ամրապնդելու անհրաժեշտությունը։

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, արտադրության գիտատեխնիկական նորացման, կազմակերպվածության և կարգուկանոնի բարելավման, կարգապահության ամրապնդման, պատասխանատվության բարձրացման կուրսը ժամանակավոր կամպանիա չէ, այլ՝ կուսակցության ստրատեգիական գիծը։ Յուրաքանչյուր բանվորի, կոլտնտեսականի, մասնագետի, արտադրության հրամանատարի, ղեկավարի, բոլոր աշխատավորների ձեռներեցության, ստեղծագործական, աշխատանքային ու քաղաքական ակտիվության մշտական բարձրացումը, նրանց ջանքերը այդ կուրսի իրագործմանը նպատակամղելը կուսակցական կոմիտեների ու կազմակերպությունների կարևորագույն, առաջնակարգ խնդիրն է։

Համաժողովրդական սոցիալիստական մրցությունը հանրապետությունում նոր թափ է ստացել ՍՄԿԿ XXVII և ՀԿԿ XXVIII համագումարները արժանավայել դիմավորելու համար։ Քաղաքի և գյուղի աշխատավորները գործնական պայքար են ծավալել սոցիալ-տնտեսական առաջադիմության տեմպերի արագացման, հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան պլենումի որոշումների կենսագործման համար։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ ըստ ամենայնի խրախուսել, համակողմանի ուղղություն տալ այդ մասսայական շարժմանը, աշխատավորների ոգևորությանը՝ հաջողությամբ պսակելու նախահամագումարյան մրցությունը, հասնելու լավագույն ցուցանիշների, բարձրացնելու պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ։ Ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետության կուսակցական կազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվներում լայնորեն ծավալվել է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրույթի և ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի ու մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների, ինչպես նաև ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների նախագծերի քննարկումը։ «Ամենագլխավորը, որ մենք պետք է ապահովենք քննարկման ընթացքում,— ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. հոկտեմբերյան պլենումում ասաց ընկեր Մ. Ս. Գորբաչովը,— գործարարությունն է և նպատակամիտումը՝ լուծելու կոնկրետ պրակտիկ հարցերը։

*Անհրաժեշտ է հասնել այն բանին, որ ժողովներն ու դիսկուսիաները լինեն բովանդակալից, անցնեն առանց շքամոլության, աղմկարարության և կազմակերպամոլության»։*

*Այդ կարևորագույն փաստաթղթերի ուսումնասիրման և պարզաբանման ամբողջ աշխատանքի կենտրոնը աշխատավորական կոլեկտիվն է։ Այստեղ պետք է անաչառ խոսակցություն ծավալել իրավիճակի, ռեզերվները գործադրելու, ռեսուրսները խնայողությամբ օգտագործելու, առկա թերությունները վերացնելու, առաջավոր փորձը տարածելու մասին։ Կարևոր է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր սովետական մարդ լավ ըմբռնի կուսակցության ծրագրային նպատակներն ու խնդիրները, նրա ներքին ու արտաքին քաղաքականության իմաստը, կարողանա դրանց հետ շաղկապել իր ամենօրյա աշխատանքը։*

*ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը խնդիր դրեց աշխատավորական կոլեկտիվների կազմակերպչական, քաղաքական և տնտեսական բոլոր ջանքերը, նրանց ամբողջ եռանդը կենտրոնացնել ամենալավ արդյունքներով ավարտելու ընթացիկ տարին և ամբողջ հնգամյակը, արժանավայել դիմավորելու կուսակցության XXVII համագումարը։*

*Հանրապետության աշխատավորները մեծ Հոկտեմբերի տարելիցը և Հայաստանում սովետական կարգերի հաստատման վաթսունհինգամյակը դիմավորում են բարոյաքաղաքական խանդավառությամբ, հայրենասիրական նոր գործերով։ Առաջնորդվելով ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. ապրիլյան և հոկտեմբերյան պլենումների որոշումներով՝ նրանք լի են վճռականությամբ նորանոր հաջողություններով բազմապատկելու հայրենիքի հզորությունը։*

---




Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 53—86—11, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 04.10.85 թ.։ Ստորագրված է տպագրության 15.11.85 թ.։ ՎՖ 05266։ Ֆորմատ՝ $70 \times 108^{1}/_{16}$։ Տպագրություն՝ բարձր։ 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 16.832։ Պատվեր՝ 2195։*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2։*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.